


Զ. Ռ.

1917 — № 3 — Յունուարի 22 — ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ — Լոյս է տեսնում կիրակի օրերը — 10 կոպէ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի. Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ**՝ Թիֆլիս, Արտասարդեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амбавоберъ". Tiflis. Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ**՝ տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։ Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։




## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ «ԿԱՊՈՅՏ ԳԻՐՔԸ»

*Լոնդոն, 1 դեկտ. 1916 թ.*

Մօտ երեք ամիս առաջ ձեզ գրած էի որ ի պատասխան Անգլ. պատգամաւոր Կոմանդանդ Բէլլէրսի, Արտաքին գործերի նախարարութեան պարլամենտական խորհրդականը Լորդ Ռոբերտ Սեսիլ խոստացած էր պարլամենտի աշնանային նստաշրջանին պատգամաւորներին ներկայացնել վաւերագրեր հայկական կոտորածների և տեղահանութիւնների մասին, միանգամայն աւելացնելով որ այդ վաւերագրերը բովանդակող «Կապոյտ Գիրքը» պատրաստւում էր Լորդ Բրայսի հեղինակութեամբ և պ. Արնոլդ Դոյնբիի խմբագրութեամբ։

Այսօր Անգլիական կառավարութիւնը պաշտօնապէս հրատարակեց հայկական այդ «Կապոյտ Գիրքը» Բրիտանական ազգերին, Ամերիկայի Միացեալ Պետութիւններին և բովանդակ քաղաքակիրթ աշխարհին ներկայացնելու թիւրք-գերմանական գաղանութիւնների այդ սարսափելի հատորը։

Բախտի անգութ հեգնութիւններից մէկն է որ հայկական նահատակութեան փաստաթղթերը պարունակող «Կապոյտ Գիրքը» հրատարակուեցաւ այն պահուն, երբ դեռ բովանդակ աշխարհում հնչում է Գերմանիոյ պետական քարտուղար Բէթման Հոլվէգի լիրբ և անպատկառ յայտարարութիւնը, որ նա երէկ արեց Ռայխստագի արտասովոր նիստին։ Գերմանիոյ և իր դաշնակիցների, Աւստրո-Հունգարիոյ, Թիւրքիոյ և Բուլգարիոյ «հսկայական յաղթանակները» և «անխորտակելի զօրութիւնը» փառաբանելէ և Դաշնակից թշնամիներին հաշտութեան առաջարկը ուղղելէ յետոյ Բէթման Հոլվէգ երդւում է Գերմանիոյ և մանաւանդ Թիւրքիոյ անունով «իրենց պատասխանատուութեան խորունկ գիտակցութեան վրայ՝ Աստուծոյ և մարդկութեան առջև» որ «Գերմանիա, Աւստրո-Հունգարիա, Թիւրքիա և Բուլգարիա հարկադրուեցին զէնք վերցնել պաշտպանելու արդարութիւնը և բնաշրջման (էվոլիւսիօն) ազատութիւնը» և այլն և այլն։ Եւ Բէթման Հոլվէգը այդ բարձրակարկառ հաւաստիքներ տալիս է աշխարհին իր «փառահեղ դաշնակից Թիւրքիոյ» վերաբերմամբ ևս, որի գոյութիւնը աշխարհիս պատմութեան բեմին վրայ և նրա ներկայութիւնը՝ հնագոյն քաղաքակրթութեան օրրանին մէջ եղած է ամենախորունկ արատ Եւրոպայի ճակատին, ըստ գերմանական հեղինակաւոր պատմիչ Տրայչկէի։ Ի հարկէ դիւանագիտութիւնը ընդունակ է իր խայտառակ ժարգոնով պարտկել մարդկային մեծագոյն ոճիրները, բայց Բէթման-Հոլվէգի խեղաթիւրումը ներկայ ժամանակների ամենացինիկ ստախօսութիւնն է։ Եւ այդ «weltgeschichtliche» յայտարարութիւնից քսան և չորս ժամ յետոյ՝ բրիտանական կառավարութիւնը անձայն անխօս հրապարակ է դնում 149 վաւերագրեր՝ հայկական սարսափների մասին՝ հաղորդած նոյն իսկ գերմանացի միսիոնարներէ ու գթութեան քոյրերէ, Զուիցերիացիներէ, Դանիմարքացի, Շուէտ, մեծ թւով Ամերիկայի ու հայ ականատեսներէ, որոնք անսեթևեթ ոճով և առանց չափազանցութեան պատմում են իրենց տեսածները Էրզրումից մինչև Դամասկոս և Դէյր էլ Զօր և Ադրիանուպոլսից մինչև Վան և Մուսուլ.—պատմական տարեգրութեանց մէջ մի եզական ոճիր, որ Թիւրք ճիւաղը գործեց հայ անպաշտպան ժողովրդի դէմ գերմանական դիւանագիտութեան և բանակի ներկայացուցիչների աչքերի առջև։ Եւ Թիւրքերն ու գերմանացիները «Աստուծոյ և մարդկութեան առջև» երդւում են իրենց պատասխանատուութեան գիտակցութեան վրայ, որ իրենք «պաշտպանում են արդարութիւնը և ազգային բնաշրջման ազատութիւնը»։

Բրիտանական պետութիւնը հրատարակելով հայկական «Կապոյտ Գիրքը» ներկայացնում է այս պատերազմում հայերի կրած գերագոյն զոհողութիւնները և այդ զոհողութիւնների վրայ դնում է Անգլիական պաշտօնական դրոշմ»։

Բացի Լեհերից մենք գալիս ենք ամենից ուշ։ Ֆրանսիական, Բելգիական և Սերբ կառավարութիւնները արդէն հրատարակել են մի քանի պաշտօնական գրքեր իրենց գրաւուած երկրամասերում Գերմանո-Աւստրիական բանակների և իշխանութիւնների գործած գաղանութիւնների մասին։ Անգլիական կառավարութիւնը մեր այդ բախտակից ժողովուրդների կրած սարսափները աւելի գործնական կերպով ներկայացնելու դիտաւորութեամբ՝ անցեալ տարի նշանակեց յայտնի իրաւաբաններից և քաղաքական գործիչներից կազմուած մի յանձնախումբ՝ նախագահութեամբ Լորդ Բրայսի հաւաքելու վկայութիւններ սարսափներին ենթարկուած զոհերից և ներկայացնել քաղաքակիրթ աշխարհի հասարակական կարծիքին։ Լորդ Բրայսի յանձնախումբը 1915-ի օգոստոսին հրատարակեց իր մանրամասն ուսումնասիրութիւնների և խնամքով հաւաքուած վկայութիւնների փաստաթղթերը իբրև մի «Կապոյտ Գիրք», որ գուցէ յաւերժապէս մնայ մի անհերքելի ամբաստանութիւն՝ գերմանական քաղաքակրթութեան և կուլտուրայի դէմ։ Բելգ ու Ֆրանսական այս «Կապոյտ Գիրքը» առանձնապէս Ամերիկայում գործեց խորունկ տպաւորութիւն, որովհետև այդ երկրում ոչ մի Անգլիացի կամ գերմանացի չէ վայելում աւելի խորին յարգանք և ժողովրդականութիւն քան Լորդ Բրայսը։

1915-ի ապրիլ ամսից ի վեր հայկական հալածանքների արձագանգները Արեւմտեան Եւրոպա հասել են կցկտուր և անկատար։ Ցարդ չէր եղած մի փորձ համակարգել առձեռն եղած վաւերագրերն ու տեղեկութիւնները։

Իսկ դիւանագէտներն ու քաղաքագիտական աշխարհը չեն կարող հիմնուել անվաւեր ու միակողմանի տեղեկութիւնների վրայ, և այսպիսի կիսկատար լուրերի վրայ հիմնել ոևէ կարծիք կամ գործունէութեան ապագայ ծրագիր։ Անցեալ գարնան Լորդ Բրայսը դիմեց զանազան հեղինակաւոր աղբիւրների խնդրելով իրեն ուղարկել բոլոր տրամադրելի վաւերագրերը։ Ստացուած պատասխաններ լրացրին այդ պակասը. հեռաւոր և անծանօթ աղբիւրներից լսուած այդ վկայութիւնները իրար հետ համաձայնում են իրենց լայն գծերովը։ Որոշ բաղդատութիւններ կատարելուց և Լորդ Բրայսի և պ. Արնոլդ Դայնբիի բացատրական հետաքրքիր ծանօթութիւնները աւելացնելուց յետոյ՝ այժմ հրատարակւում է «Կապոյտ Գիրքը» բաղկացած 684 մեծածաւալ էջերից, և 149 վաւերագրերի հետ բովանդակում է նաև զանազան պաշտօնական և անպաշտօն նամակներ։

Բոլոր թերթերը այսօր մէջ են բերում հատուածներ հայկական «Կապոյտ գրքից»։ «Times» արտատպում է երկար հատուածներ Լորդ Բրայսի նախաբանից և սասունցիների հերոսական պայքարների մասին Թիֆլիսից իմ գրած նամակներից։ Մի խմբագրականով Անգլ. մեծագոյն թերթը մատնանշում է հայերի նահատակութեան ամենատխուր գիծերը և հայ ազգի կրած զոհողութիւնները ներկայ պատերազմում։

«Manchester Guardian», «Daily Telegraph» և ուրիշներ երկար հատուածներ տալուց յետոյ, խմբագրականներով վեր են հանում Թիւրքական գաղանութիւնները և յիշեցնում են իրենց ընթերցողներին հայերի հաւատարմութիւնը դէպի մարդկայնական վեհագոյն իդէալները՝ հակառակ իրենց կրած աննախորդ զոհաբերութիւններին.

Հայկական «Կապոյտ Գիրքը» այսօր միաժամանակ լոյս է տեսել նաև Ամերիկայում և չէզոք երկիրներում։

Յաջորդիւ մի քանի խօսք հրատարակուելիք հայկական «Կարմիր Գրքի» մասին։

*Արշակ Սաֆրաստեան*

# Ներքին տեսութիւն

## ԳԱՂԹԱԿԱՆԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐ

Տաճկահայաստանի աւերումից յետոյ՝ երբ դժբաղդ հայ ժողովրդի մնացորդները տաճկական և քրդական սոսկալի ջարդերից մազապուրծ լինելով՝ Կովկաս ապաւինեցին, հայ կազմակերպութիւնները հնարաւոր օգնութիւնը հասցրին նրանց։ Սկզբում պէտք էր մտածել միայն նրանց ապաստարան և սնունդ տալու մասին, և հայ կազմակերպութիւնները այդ գործով էլ զբաղուեցին ու փոքր ի շատէ թեթևացրին հայրենի հողից հալածուած և բաղդի բերմունքին թողնուած փախստականների ծանր վիճակը։ Այս շրջանում մեծ դեր կատարեց Կովկասի հայ գիւղացութիւնը՝ իւր խրճիթը և ունեցած ցամաք հացը կիսելով թշուառ եղբայրակիցների հետ։

Տագնապի առաջին շրջանն անցնելուց յետոյ պէտք էր մտածել այն բազմաթիւ մանուկների մասին, որոնց ծնողները սրի, հրի և սովի ու հիւանդութիւնների զոհ գնալով՝ անպաշտպան ու անտէր էին թողել իրենց սիրելի զաւակներին. հայ կազմակերպութիւնները ժողովեցին որբերին և հետզհետէ տեղաւորեցին նրանց որբանոցներում։

Այնուհետև, երբ կառավարութեան տուած նպաստների միջոցով գաղթականների օրական պարէնը մասամբ հայթհայթուեց և որբանոցների գրութիւնն էլ ըստ հնարաւորութեան ապահովուեց, հայ կազմակերպութիւններն իրենց ուշադրութիւնը կենտրոնացրին նաև դպրոցական հասակ ունեցող գաղթական երեխաների վրայ։ Բացուեցին յատուկ գաղթական դպրոցներ գաղթական ուսուցիչներով. սկզբում այսպիսի դպրոցների թիւը շատ քիչ էր, որովհետև հայ կազմակերպութիւնները կարևոր դրամական միջոցներից զուրկ էին։

Այս խնդրում նախաձեռնող հանդիսացաւ Թիֆլիսի հայ ուսուցչական Յանձնաժողովը, որ 1914—15 թ. Թիֆլիսում բացեց մի քանի բաժանմունքներ, իսկ 1915—16 թ. ունէր Թիֆլիսում 9 բաժանմունք և Թիֆլիսի գաւառում ևս 9 դպրոց՝ ընդամենը 967 աշակերտ-աշակերտուհիներով։

Հայկ. Կենտ. Կոմիտէն նպաստելով հայ ուսուցչական Կոմիտէին, միաժամանակ ինքն էլ գաւառներում բացեց գաղթականական դպրոցներ՝ թէ առանձին և թէ որբանոցներին կից. 1915—16 թուին Կենտր. Կոմիտէն ունէր 40 դպրոց, որի աշակերտութեան թիւը հասնում էր 3,740-ի (այս թւում են նաև հայ ուսուցչական Կոմիտէի վերոյիշեալ դպրոցները)։

Կենտրոնական Կոմիտէն բացի 40 գաղթականական դպրոցներից ունէր նաև որբանոցներին կից դպրոցներ և այդ բոլոր դպրոցների պահպանութեան համար ծախսել է 90,000 ռ., որից միայն 15,000-ը ստացել էր Կովկասեան գլխաւոր կոմիտէից։ Երբ Կենտրոնական Կոմիտէն իւր արած ծախքերի համար դիմեց գաղթականական գործի գլխաւոր լիազօր գեներալ Թամամշեանին, վերջինս միջնորդութիւն յարոյց Պետրոգրադի գաղթական գործի առանձին Խորհրդին կոմիտէի խնդրին բաւարարութիւն տալու։

Պետրոգրադի առանձին Խորհուրդը բաւարարութիւն չտալով Կոմիտէի խնդրին՝ արած ծախքերի նկատմամբ, որոշեց միայն Կոմիտէի բացած դպրոցների երեք ամսուայ ծախքերի համար տալ 28,000 ռ.։ Այսպիսով Կ. Կոմիտէն ծախսելով մօտ 90,000 ռ., կառավարչական մարմիններից նպաստ ստացել է միայն 43,000 ռ.։

Կ. Կոմիտէն տեսնելով, որ ապագայում այդպիսի խոշոր ծախսեր անելու հնար չպէտք է ունենայ՝ դիմեց Պետական Դումայի անդամ պ. Մ. Պապաջանեանին՝ միջնորդութիւն յարուցանելու ուր հարկն է։ Սա 1916 թ. օգոստոսին մի ընդարձակ գրութեամբ հաղորդեց թէ Կ. Կոմիտէին և թէ միւս հայ կազմակերպութիւններին, որոնք զբաղւում են գաղթականական գործերով, որ իւր դիմումը յարգելով՝ Մեծ Իշխանուհի Տատեանա Նիկոլայևնայի Կոմիտէն յատկացրել է (պ. Պապաջանեանը գրում էր, որ այդ որոշումն իրեն հաղորդուած է առ այժմ բերանացի) հայ գաղթականական դպրոցների 8,740 երեխաների ուսուցման համար մօտ 110,000 ռ. (երեք ամսուայ համար)։ Պ. Պապաջանեանը յայտնում էր, որ եթէ գաղթական երեխաների 8,740 թիւը լրանայ դպրոցներում, կարելի է այդ թիւը հասցնել 14,000-ի, հարկաւ նորից խնդրամատոյց լինելով ուր հարկն է։

Այս գրութիւնն ստանալով՝ հայ կազմակերպութիւնները սկսեցին եռանդով աշխատել, որ գաղթականներ հաւաքուած վայրերում նոր դպրոցներ բացուեն՝ առանց սահմանափակելու դպրոցների կամ երեխաների թիւը. հետևանքն այն եղաւ, որ գաղթականական դպրոցներում հաւաքուած երեխաների թիւը հասաւ ոչ թէ 14,000-ի, ինչպէս ենթադրել էր պ. Պապաջանեանը, այլ անցաւ 27,000-ից և նախահաշուի բոլոր թուերը տակն ու վրայ եղան։

Այսպիսով 1916—17 թ. առաջին երեք ամիսների յատկացուած գումարը փոխանակ 8,740 երեխայի դպրոցական ծախքերը հոգալու, պէտք է գործադրուէր 27,000 երեխայի համար...։ Նորից աւելացան հայ կազմակերպութիւնների նուազուրդները (դեֆիցիտները). այն կազմակերպութիւնը, որ աւելի մեծ եռանդ է ցոյց տուել շատ դպրոցներ բանալու, հարկաւ նրա նուազուրդն (դեֆիցիտն) էլ աւելի խոշոր եղաւ.

Ինչպէս մեր բոլոր գործերում, այնպէս էլ գաղթականական դպրոցական գործում ապակենտրոնացման սիստեմը շատ է խանգարում բարեյաջող ելքին. եթէ ամբողջ գործը կենտրոնացած լինէր մի մարմնի ձեռքը, այսպիսի թիւրիմացութիւններ տեղի չէին ունենայ։ Սեպտեմբերին փորձ եղաւ Թիֆլիսում մի գաղթ. դպրոցական խորհուրդ հաստատելու, որը նոյն իսկ մի քանի էական որոշումներ արեց, ուսման ծրագիր մշակեց, ռոճիկների կարգեր որոշեց, սակայն չգիտեմ ինչ դիւթական գաւազանի շնորհիւ աննկատելի կերպով ասպարիզից վերացաւ և չքացաւ. «Մնաց էլի էն ջուրը, էլի էն ջրաղացը»....։

Ի թիւս այլ հայ կազմակերպութիւնների Կ. Կոմիտէն ևս այս դպրոցական տարուայ սկզբում մեծ եռանդով հետադրական կարգադրութիւններով իւր գաւառական լիազօրներին հրահանգեց՝ գաղթականական դպրոցներ բանալ առանց որև է սահմանափակման և հետզհետէ ստացաւ տեղեկագրեր բացուած դպրոցների մասին։ Դեկտեմբերի վերջը Կ. Կոմիտէն արդէն բացած ունէր 250 բաժանմունք՝ 10,487 աշակերտ-աշակերտուհիներով, որոնց անուանացանկը մեծ մասամբ արդէն ստացուած է և շուտով բոլորը կը ստացուի։ Կոմիտէին կից կազմուած գաղթ. դպրոցական յանձնաժողովի պատրաստած ցուցակներից երևում է, որ՝

1. Նոր Բայազէդի շրջանում գաղթ. դպրոցներն այցելում են 1,002 գաղթ. երեխայ.

| | |
|---|---|
| 2. Ղազախի շրջանում | 567 |
| 3. Թիֆլիսի որբանոցներում | 617 |
| 4. Մեծ Ղարաքիլիսայի շրջանում | 745 |
| 5. Սանահնի որբանոցում | 132 |
| 6. Գանձակի շրջանում | 623 |
| 7. Կաղզուանի շրջանում | 125 |
| 8. Ալաշկերտի շրջանում | 311 |
| 9. Ախալքալաքի որբանոցում | 290 |
| 10. Արդահանի շրջ. | 245 |
| 11. Արդանուչի շրջ. | 577 |
| 12. Բաթումի որբանոցում | 52 |

| | | |
|---|---|---|
| 13. | Դիլիջանի » | 858 |
| 14. | Ալէքսանդրապոլի շրջ. | 2255 |
| 15. | Խնուսում | 150 |
| 16. | Ղարսի շրջ. | 1150 |
| 17. | Էրզրումի որբ. | 175 |
| 18. | Վանի շրջանում | 600 |
| 19. | Ախալցխայի որբ. | 72 |

Այս բոլոր դպրոցներում դասաւանդում են 243 ուսուցիչ-ուսուցչուհիներ, որոնցից շատ քչերը միայն ռուսահայեր են։

Մինչև դեկտեմբերի վերջը Կ. Կոմիտէն այս դպրոցների պահպանութեան համար արդէն ծախսել է մօտ 52,000 ռ., սակայն ստացել է միայն մօտ 28,000 ռ.։ Այս թուերը պէտք է ի նկատի ունենան գաւառներում և այսու բացատրեն այն հանգամանքը, որ Կոմիտէն ամենաանհրաժեշտ դպրոցական կարիքներին է միայն կարողանում բաւարարութիւն տալ։

Զնայելով գաղթ. դպրոցների ունեցած թերութիւններին և դրամի սակաւութեան պատճառով առաջացած դժգոհութիւններին, մենք մխիթարւում ենք, որ մօտ 27,000 գաղթ. երեխաներ ազատուելով փողոցներում թափառելուց, իրենց մայրենի լեզուով գրագիտութիւն են սովորում և ապագայ հայրենի օջախի կրակը վառ պահողներ պատրաստւում։

Իսահակ Յարութիւնեան

---

# ԳԱՒԱՌ

*Փառակայ (Հին Նախիջև.).* — Գիւղս բաղկացած է 200 տնից. վարելահող չունի, ցորենը ստանում է բացառապէս դրսից. ցորենի պուդը այժմ ծախւում է 10 ռ., իսկ միւս մթերքների գտնուելու մասին խօսք անգամ լինել չի կարող։ Դեկտեմբերի 3-ին ծխ. դպրոցում, ծնողական ժողովում, դպրոցի կրօնուսոյց Մ. քահ. Տէր Սարգսեանի առաջարկութեամբ, յոտընկայս միաձայն շնորհակալութիւն յայտնեցին դպրոցի բարերար պ. Ղեւոնդ Ցակոբեանին, որը շինել է դպրոցի քարաշէն գեղեցիկ շէնքը, ամեն տարի նպաստել և նպաստում է բաւական մեծ գումարով դպրոցին և, ինչպէս իմացանք, որոշել է ապահովել դպրոցի գոյութիւնը։

Դպրոցը կոչւում է յիշեալ պարոնի անունով, որի եռանդը գովասանքի է արժան։

Գալուստ Ոսկանի

*Ախալցխա, 12 դեկտ. 1916.* — Ամսիս 10-ին, քաղաքիս „Ռիմա" թատրոնում տեղիս երկսեռ դպրոցների ուսուցչական խումբը, սիրողների մասնակցութեամբ յօգուտ Կարապետեան և Եղիսաբեթեան դպրոցների խաղացին Շիրվանզադէի „Եւգինէ" դրաման, 3 գործ.։ Մուտք է եղել, ինչպէս լսեցինք, մօտ 300 ռուբլի։

— Այսօր, ամսիս 12-ին, հողին յանձնեցին նոր հանգուցեալ Գրիգոր Բուփալեանի մարմինը։ Հանգուցեալը մի բարի և բարեգործ անձն էր և վայելում էր քաղաքիս մէջ յարգանք և պատիւ։ Նրա յիշատակը յարգելու համար, նոյնպէս պսակի և հոգեհացի փոխարէն նրա ժառանգը՝ Մկրտիչ Բուփալեանը և կինը 300 ռ. յատկացրին Կ. Հ. Բ. ընկ. տեղական ճիւղին, որի տոկոսով ամեն տարի քաղաքիս Եղիսաբեթեան օրիորդաց դպրոցում, հանգուցեալի անունով պահուելու է մի սանուհի, 100 ռ. նոյն ճիւղի որբանոցին, 100 ռ. տեղական նոր բացուելիք իգական վարժարանին, 100 ռ. ճիւղի Աղքատախնամ մասնախմբին, 50 ռ. տեղական հայ-կանանց Բար. Ընկ., 50 ռ. կրկին Որբանոցին (հանգուցեալի կնոջ կողմից), իսկ եղբայր՝ Դաւիթ Բուփալեանի կողմից 100 ռ. նոյն Որբանոցին և այլն։ Ընդամենը 850 ռուբլի։

Թ.

*Քութայիս, 19 դեկ. 1916.* — Կ. Հ. Բ. Ընկերութեան տեղական ճիւղի նախագահ բժ. Աշճեանի եռանդուն նախաձեռնութեամբ՝ ամսոյս 18-ին յօգուտ նոյն ընկերութեան տեղիս հայոց դպրոցի դահլիճում կայացաւ մի երաժշտական-ընտանեկան երեկոյթ։ Եկել էին բաւական հասարակութիւն։ Նուագում էին լարանուագ և զինուորական երաժշտախումբը, որից վերջը այստեղի քաղաք. դպրոցի ուսուցիչ պ. Խաչատուրեանը ճիանուրով վերին աստիճանի լաւ և սահուն նուագեց «Մի լար, բլբուլ», «Թէ իմս հայրենեաց» մի վրացերէն և մի մալորոսերէն երգ, որի համար քանիցս ծափահարեցին հանդիսականները։

Ընդհանուր մուտքը եղաւ մօտ 350 ռ., որից պէտք է դուրս գալ ծախսը մօտ 100 ռ.։

Երեկոյթին նպաստում էին տիկ. Շ. Աշճեանը և պ. Ս. Հոգիջանեանը։

Ցուսիկ քահ. Ապրիլեան

---

# ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

## ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

Յունուարի 19-ին տեղի ունեցաւ Հայկ. Կենտր. Կոմիտէի նիստը, նախագահութեամբ Ս. Յարութիւնեանի։

1. Տիկ. Ս. Օգանեզեանցը ներկայացրեց «Մի բաժակ թէյ»-ի դեկտեմբերի հաշիւը, որից երևաց, որ զուտ մուտք է եղել 2.985 ռ. 36 կ.։

2. Այնուհետև նախագահը հեռագրեց զեկուց, որ ստացուած է և Լոնդոնից օր. Ռոպինզոնից 4.650 ռ. յատկապէս սասունցի որբերի համար և 8.225 ռ. Էրզրումի և Երզնկայի շրջանի գաղթականութեան կարիքների համար։ Որոշուեց Ալէքսանդրապոլում եղած որբանոցներից մէկը յատկացնել սասունցիներին, կոչելով «Ռոպինզոնի Կարմիր Խաչի որբանոց» և մեր ներկայացուցչի միջոցով յայտնել շնորհակալութիւն օրիորդին։

3. Զեկուց Կ. Հ. Բ. Ը. Սոչիի ճիւղի հեռագիրը, որից երևում է, որ այնտեղ կան առայժմ 20 որբ. որոշուեց բաց անել Սոչիում որբանոց։

4. Ալաշկերտի Կոմիտէիս լիազօր Փափազեանի գրութիւնը, որը և թարգման հանդիսանալով Ալաշկերտի և շրջանի հայ գաղթականութեան աննախանձելի դրութեան, խնդրում է որևէ կերպ զօհացում նրանց դրութիւնը բարուոքելու համար։ Որոշուեց դիմել գաղթականական գործերով զբաղուող գլխաւոր լիազօր Թամամշեանին և խնդրել աջակցութիւն։

5. Վերայի որբանոցի խնամակալուհի տիկ. Հ. Առստամեանը զեկուց, որ զանազան անձերից ստացել է յօգուտ հագուստներ գնելու 226 ռ.։

Որբանոցների յանձնաժողովը շնորհակալութեամբ ստացել է յօգուտ Վերայի որբանոցի տիկ. Խաչատրեանից 100 ռ., տիկ. Գէորգեանից 50 ռ. և Լ. Բալայեանից 15 ռ.։

Որբանոցների յանձնաժողովը մշակում է մի կանոնադրութիւն՝ որբանոցների ներքին կեանքի, ուսումնական և տնտեսական մասերի համար։

Կ. Հ. Բ. Ընկ—թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է Սամարղանդից Վ. Այվազեանի միջոցաւ պ. Ա. Ոսկանեանի յիսնամեայ տարելիցի օրը հանգանակուած և երեկոյթից գոյացած յօգուտ փախստականների 474 ռ. 80 կ.։

— Պ. Արտաշէս Յովհաննիսեան Մինասեանից Սանահնի դպրոցի նպաստ 200 ռ.։

— Բելի Կլիւչից պ. Հայկ Միրաքեանի ճաշկերոյթին ժողոված յօգուտ գաղթականների 14 ռ.։

— Մկրտիչ Տիգրանեան Յովհաննիսեանից յօգուտ Էրզրումի հայերի 5 ռ.։

— Պ. Ս. Կանայեանցի միջոցաւ՝ Լևոն Միրզոյեանի որդաւ,

Գարեգնի տնախմբութեան օրը հիւրերից ժողոված յօգուտ տաճկայ որբերի 35 ռ.։

—Նունէ և Վարդան Աւետիսեաններից ի յիշատակ Յարութիւն Աւետիսեանի 50 ռ., որից 30 ռ. յօգուտ ճաշարանի և 20 ռ. յօգուտ չքաւորների։

—Տիկին Ովսաննա Եգորեան Ծանդուլեանից մշտական անդամութեան համար 100 ռ., որին տրուած է մշտական անդամութեան մրցագիր։

—Գ. Ս. Մատինեանից «Համբաւաբերի» մի տարուայ վճար 4 ռ. Համզաչիմանի դպրոցին ուղարկելու։

—Փուղինեան-Ալիխանեանից «Համբաւաբերի» մի տարուայ վճար՝ 4 ռ. Թիֆլիսի Նամքոռեցոց ծխ. դպրոցին ուղարկելու։

—Գ. Ալէքսանդր Յարութիւնեանից «Համբաւաբերի» մի օրինակի վճար 4 ռ., ընտրութիւնը թողնելով խմբագրութեան։

Ինժ. Ասլան Ներսիսեան Աթաբէգեանից «Համբաւաբերի» մի օրինակի վճար 4 ռ. ընտրութիւնը թողնուած է խմբագրութեանը։

—

Սանահինի գաղթականական ապաստարանը շնորհակալութեամբ ստացել է, Ծննդի տօների առթիւ եղբ. Մայիլեաններից երեք պուդ 7 գրվանքայ ձուկ, որ շուկայի գնով անում է 50 ռ., բացի այս Ակցիոներ. ընկ. «Թառուզ»ից երկու տակառ ցեմենտ (շուկայի արժողութեամբ 40 ռ.), Կողքի աղահանքի ընկ. քսան և հինգ պուդ աղ (երեսուն ռ. արժողութեամբ)՝ և մի խումբ անձերից յօգուտ ապաստարանի 520 ռ.։

# Քրոնիկոն

Հինգշաբթի, յունուարի 19-ին, հայ գաղթականական կազմակերպութիւնների կողմից Փոխարքայի քաղաքացիական օգնական իշխան Օրլովին ներկայացան Կ. Հ. Բ. Ը. Խորհրդի և Հայկական Կ. Կոմիտէի նախագահ Ս. Յարութիւնեան, «Նպաստամատոյց» Ընկերութեան փոխ-նախագահ՝ Հ. Առաքելեան և Հայոց Գիւղատնտեսական Ընկ. նախագահ Ս. Սահակեան, իբր պատգամաւորներ, և խնդրեցին ներկայացնել Փոխարքային իրենց գրաւոր խնդիրը թոյլ տալու փետրուարի 6—8 գումարել Երեւանում համագումար գաղթականական գործերի մասին։ Իշխան Օրլովը յայտնեց, որ Փոխարքան սկզբունքով արդէն տուել է իր համաձայնութիւնը և պաշտօնական պատասխանն էլ շուտ կը տրուի։

—

Հայկ. Կենտ. Կոմիտէի նախագահ պ. Ս. Յարութիւնեանը ստացել է Մանչեստրից պ. Մանասեանից մի գրութիւն, որով հաղորդւում է, որ այնտեղ կազմակերպուել է Կոմիտէ անգլեցիկ և հարուստ անգլիացիներից և հայերից օգնելու հայ որբերին, բանալով որբանոցներ։

—

Գ. Հարոլդ Բըկըստոնը, որը երկար ժամանակ Լոնդոնի Լորդ Մայորի ֆոնդի կողմից աշխատում էր այստեղ գաղթականների համար, ուղարկել է «Համբաւաբեր»-ին իր նոր հրատարակութիւնը գաղթականների վիճակի մասին։

—

Կովկասեան ցեմստվոյի օրինագիծը այս ամսի 25 ից քըննուելու Պետրոգրադում նախարարների առանձին յանձնաժողովում՝ նախագահութեամբ սենատոր Միշիւտինի։ Այդ օրինագծով հայերը ոչ մի տեղ մեծամասնութիւն չեն կազմում։

Այս տարի լրանում է Յովնանեան դպրոցի քառասնամեակը՝ Այդ առիթով Յովնանեան տոհմի ներկայացուցիչը հոգաբարձական Խորհրդի մէջ՝ պ. Միքայէլ Յովնանեանը հոգաբարձութեանն արած մի դիմումով առաջարկել է պատրաստել տալ տպագրութեան համար դպրոցի պատմութիւնը սկզբից մինչև այժմ, խոստանալով իւր հաշուով տպագրել պատրաստելիք աշխատութիւնը։ Հոգաբարձութիւնը շնորհակալութեամբ ընդունելով այդ առաջարկը՝ արդէն որոշ քայլեր է արել այդ ուղղութեամբ։

—

Մեր աշխատակից պ. Վ. Վալադեանը գրել է երեք արարուածով մի նոր պիէս «Հողմ» անունով։

—

Աշտարակի բարձր տարրական դպրոցում կայացել է մի բազմամարդ ժողով, ուր որոշուած է հանգուցեալ Գ. Պռօշեանի անունով մի գրադարան-ընթերցարան բանալ Աշտարակում։

—

Մի խումբ մարդիկ Թիֆլիսի նահանգապետին խնդրամատոյց են եղել՝ Բորչալուի գաւառի Ազարակ գիւղում հիմնելու սպառողական ընկերութիւն „Լոյս" անունով։

—

Վաճառականական բանկը Երեւանում և Վլադիկաւկազում բացել է բաժանմունքներ։

—

„Приаз. Край" թերթը յայտնում է, որ Նոր-Նախիջեւանի բանկային գործիչները տեղեկութիւն են ստացել այն մասին, որ այս տարի Ռուսաստանի խոշոր քաղաքներից մէկում հիմնուելու է Հայ-Ամերիկական բանկ 150 միլիոն ռուբլի հիմնական դրամագլխով։

—

Որոշուած է Կովկասի Գիւղատնտեսական ընկ. կից հիմնել անտառաբանական և կաթնատնտեսական միամեայ դասընթացք, որ բացուելու է փետրուարի 1-ին։

# Արտաքին տեսութիւն

## ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

### ՌՈՒՄԻՆԻԱՅԻ ԵՒ ԲՈՒԼՂԱՐԻԱՅԻ ՀԱՅՈՒԹԻՒՆԸ*)

III.

Հարկ է այստեղ աւելացնել, որ նախ քան Բուլղարիայի պատերազմ յայտարարելը, փախստական հայերի նոր հոսանք է սկսւում Պոլսից դէպի Բուլղարիա։ Գալիս են հատ-հատ, երբեմն ընկերներով, երբեմն ընտանիքով, երբեմն նոյն իսկ խմբերով՝ Սկզբում այդ գաղթողների մէջ հաւասար թւով տղամարդիկ էին լինում, սակայն վերջերքը գալիս էին միայն կանայք ու երեխաներ։ Այս երեւոյթը պարզ ցոյց է տալիս, որ թէպէտ կառավարութիւնը սկզբում դէմ չէ եղել հայերի գաղթին, սակայն վերջերը հետզհետէ դժուարացնում է և արգելում նոյն իսկ երեխաների ու կանանց փախուստը։ Ամենավերջին փախչողները Պոլսից եկել են մայր ու դուստր երկու հայուհիներ, որոնց հայրը Պուքրէշի կառավարութեան միջնորդելով, կարողացաւ իւր ընտանիքը Պոլսից դուրս հանել իբրև ռումինահպատակ։ Պոլսից նրանք մեկնում են ռումինական միսիայի հետ օգոստոսի 16-ին և հասնում են Բուքրէշ սեպտեմբերին։ Ի դէպ պէտք է ասել, որ նրանք Պոլսի հայութեան վիճակը այնպիսի մռայլ գոյներով չէին նկարագրում, ինչպէս հաղորդում էին մի քանի թղթակիցներ։

Պոլսից Բուլղարիա անցնող հայերի թիւը կարելի է 7,000 հաշուել։ Փոքր ինչ կանգ առնելով Բուլղարիայում, նրանց մի խո-

*) Տես «Համբաւաբեր» № 1։

չոր մասը անցնում է Եւրոպա, գլխաւորապէս Շուէյցարիա, մի երկրորդ մասը անցնում է Կովկաս, իսկ երրորդ մասը մնում է Բուլգարիայում, բնակութեան վայր ընտրելով գլխաւորապէս Փիլիպպէ և Սոֆիա քաղաքները։

Այսպիսով մինչդեռ Բուլգարիայի հայութիւնը փախչում է իր բնակավայրից, նրա փոխարէն Պոլսից գալիս են գաղթական հայերի նոր խմբեր, այն տարբերութեամբ սակայն, որ Բուլգարիայից հեռանում են գլխաւորապէս երիտասարդ ու կռւող ոյժեր, իսկ Պոլսից գալիս են մեծ մասամբ ընտանիքներ։ Բացի այդ Պոլսից եկող և Բուլգարիայում բնակութիւն հաստատող հայերի թիւը կարելի է հաշուել 1500—2000 հոգի, մինչդեռ Բուլգարիայից հեռացողների թիւը կարելի է հաշուել մօտաւորապէս 3000 հոգի։

Այս գաղթը Բուլգարիայից և Պոլսից, ինչպէս ասացի, երկար չի տեւում։ Բուլգարիան գոցում է իր սահմանները դուրս մեկնող հայ կամաւորների առաջ, Աւստրիան արգելում է հայերի մուտքը իր երկրի վրայով դէպի Շուէյցարիա, իսկ Թիւրքիան էլ բացարձակ կերպով արգելք է դնում հայերի գաղթին Պոլսից ու շրջակայ վայրերից։ Եւ հայերը մնում են դժուար կացութեան մէջ, այն ինքնախաբ յոյսով, թէ գուցէ բուլգար կառավարութիւնը շարունակի բարեացակամ յարաբերութիւն պահպանել հայերի նկատմամբ։

Սակայն բուլգար կառավարութեան վերաբերմունքը հայերի նկատմամբ պարզ էր։ Առիթ եղած դէպքում կառավարութիւնը քանիցս չեշտել է, որ հայերի բռնած այսօրուայ քաղաքականութիւնը դէմ է Բուլգարիայի քաղաքականութեան։ Հարկ եղած դէպքում արգելք է դրուել նոյնիսկ հայ կազմակերպութիւնների այս ու այն պրոպանդական գործունէութեան, թէև միշտ մեղմ ու մասամբ էլ կողմնակի կերպով։ Հասնում են վերջապէս պատերազմի օրերը։ Յայտարարւում է զօրահաւաք. Թերթերից մի քանիսը մատնանշում են հայերի և միւս օտար տարրերի զինուորագրութեան անհրաժեշտութիւնը։ Վառնայի մի թերթ նոյնիսկ բողոքում է, որ հայերը ազատ են մնում զինուորագրութիւնից։ Հայերի համար ստեղծւում է անելանելի դրութիւն։ Պատերազմը սկսւում է. անցնում են շաբաթներ, բայց ոչ մի որոշ օրէնք չի հրատարակւում հայերի զինուորագրութեան մասին։ Մի քանի տեղ հայերին ցուցակագրում են, մի քանի տեղ քշում են ռազմական աշխատանքի. Ռուսչուկում ու Վառնայում մի քանի հայերի զէնքի են կանչում ու տեղաւորում մակեդոնական գործող բանակի մէջ։ Սակայն ընդհանրապէս տիրում է այն կարծիքը, որ կառավարութիւնը չվստահանալով հայերին, խուսափում է նրանց զէնքի կանչել։

Այս ամենից բացի լուր է տարածւում, որ թիւրքահպատակ հայերին զինուորական ծառայութեան համար Պոլիս պիտի ուղարկեն։ Թիւրք հիւպատոսներն էլ իրենց հերթին խրատում ու յորդորում են զինուորական ծառայութիւնից ազատուելու համար վճարել պահանջուող զինուորական տուրքը՝ 44 ոսկի և ստանալ օսմանեան քաղաքացու ազատ անցագիր Եւրոպայում ապրելու համար։ Գտնւում են, ի հարկէ, շատ միամիտներ, որ վճարում են պահանջուող զինուորական տուրքը։ Սակայն հայ երիտասարդութիւնը շուտով համոզւում է, որ միակ փրկութիւնը փախուստն է։ Եւ փնտրում են ներելի և աններելի միջոցներ։ Բարեբախտաբար յարաբերութիւնը Ռումինիայի և Բուլգարիայի միջև 1915 թուականի վերջին երկու ամիսներին կրկին բարելաււում է կարճ ժամանակով, որ և հանդիսանում է նպաստաւոր հանգամանք հայերի համար՝ փախչելու Ռումինիա։ Այդ յարմար առիթից օգտւում են գլխաւորապէս Ռուսչուկի երիտասարդ հայերը, մասամբ էլ Վառնայինը ու Շումլայինը։

Եւ շուտով Ռումինիան, առանձնապէս Բուքրէշը, հիւրընկալում է խոշոր թիւ հայեր՝ փախած Բուլգարիայից, թւով 1000 հոգուց աւելի։

Այնուհետև գոցւում է Բուլգարիայի սահմանները, և միայն երբեմն հատուկտոր փախստականներ են երևում։ Կանոնաւոր յարաբերութիւն պահպանելը՝ Բուլգարիայի ու Ռումինիայի հայութեան միջև՝ նոյնպէս անկարելի է դառնում. մնում է օգտուել մասնակի ու թռուցիկ տեղեկութիւններով, ըստ որոնց հայերի վիճակը շարունակւում է մնալ նոյն անորոշութեան մէջ. բացի մի քանի ձերբակալութիւններից, հայերը մնում են ապահով։

Այժմ դառնանք Ռումինիայի հայութեան։

## Ռումինիայում

## IV.

Մինչդեռ Բուլգարիայում հայութիւնը ապրում է խուճապի ու երկիւղի օրեր, Ռումինիայում ընդհակառակը հայութիւնը ապրում է ազատ ու ամենափայլուն օրեր։ Այսպէս եմ ասում, որովհետև պատերազմի ամբողջ ընթացքում Ռումինիան իբրև չէզոք պետութիւն, առևտրական լայն յարաբերութիւն ստեղծելով Գերմանիայի ու Ռուսաստանի հետ, հիմք էր դրել այնպիսի մի ազատ ու վիթխարի առևտրի, որպիսին չի եղել Բալկանի պատմութեան մէջ։ Իսկ այդ առևտրի մէջ հայերը գործօն ու աչքի ընկնող մասնակցութիւն ունէին։ Բաւական է յիշատակել, որ Գերմանիային հացահատիկներ մատակարարող քննիչ մասնաժողովի նախագահը հայ վաճառական էր։ Միւս կողմից Սիլիստրիայի հայերը կազմելով ջրաղացների սինդիկատ, իրենց դրել էին անգլիական արդիւնաբերական մասնաժողովի տրամադրութեան տակ։ Առհասարակ Կոստանցայի, այլ և ամբողջ Դոբրուջայի առևտրի բացարձակ մեծ մասը վարում էին հայերը։ Դժբախտաբար այս փայլուն յաջողութիւնը վերջացաւ այն մեծ աւերով, որ տեղի ունեցաւ ռումինական պատերազմի հենց առաջին օրերը։ Երկիրը քանդուեց և տնտեսական ամենամեծ հարուածը բաժին ընկաւ հայերին։ Մարդիկ, որոնք երէկ հարիւր-հազարների առևտուր ունէին, փախչելով սարսափելի թշնամու առջև, այսօր մնացին ամենախեղճ դրութեան մէջ։

Նոյն ճակատագիրը բաժին ընկաւ և՛ Ռումինիայի միւս վայրերի հայութեան։ Քանի Ռումինիան չէզոք էր մնում, ազգաբնակչութիւնը ապահով էր և հայերն էլ նրանց հետ ապահով հարստանում էին։ Այս հանգամանքը նպաստաւոր էր ոչ միայն վաճառականներին, այլ և արհեստաւորներին. իսկ արհեստի մէջ հայերը պատուաւոր դեր ունէին կատարած Ռումինիայում, մանաւորապէս մայրաքաղաք Բուքրէշում։

Բուքրէշում հայերի թիւը հասնում է 6,000, որի բացարձակ մեծամասնութիւնը պարապում է կօշկակարութեամբ։ Այդ արհեստի մէջ ամբողջ Ռումինիայում հայերի հետ մրցող չկայ։ Շուկայի բացարձակ տէրն են և իրենց արհեստին տուել են յատուկ ձև։ Վաստակն էլ խոշոր էր։

Միւս վայրերի հայութիւնը պարապում է մանր վաճառականութեամբ և երբեմն էլ արհեստներով։

Ամբողջ Ռումինիայի հայութիւնը, 20 հազար, տեղաւորուած են գլխաւորապէս Բուքրէշում, Կոստանցայում, Սիլիստրայում; Բազարջիկում, Գալացում, Բոտոշանում և այլ վայրերում։ Պատերազմի ընթացքին նրանց թիւը մի կողմից աւելացել, միւս կողմից պակասել է։

Վերև, Բուլգարիայի մասին խօսելիս, ասացի, որ բուլգարահայերը ապաստարան էին փնտրում Ռումինիայում, գլխաւորապէս Բուքրէշում։ Նրանց ընդհանուր թիւը պատերազմի սկզբից հաշուած,—որոնք բնակութիւն են հաստատում Ռումինիայում—հասնում է 2000-ի։ Սրանց մեծ մասըստիպուած է լինում արհեստի նուիրուելու, գլխաւորապէս կօշկակարութեան, միւս մասը ձեռնարկում է ժամանակաւոր վաճառականութեան։

Այս եկու ջնների փոխարէն Ռումինիայից դուրս են գնում մեծ թիւ հայ երիտասարդութիւն, սկզբում տոգորուած կամաւորական հարցով, վերջերն էլ երկիւղ կրելով ռումինական զինուորագրութիւնից։

Կամաւորական շարժումը Ռումինիայում աւելի կանոնաւոր ընթացք է բռնում, քան Բուլղարիայում, շնորհիւ այն հանգամանքի, որ հայ կազմակերպութիւնները այստեղ լիազօր ու հրահանգիչ մարմին չեն ունենում։ Ճիշտ է, կուսակցական պայքարը այստեղ ևս ստանում է անճոռնի ձև, սակայն ժողովուրդը՝ անտեսանելով ամեն վէճ ու կռիւ, հետևում է իր ներքին ու ազնիւ բնազդին—գնալ կռուելու հայրենիքի դարևոր թշնամու դէմ։ Կազմում են յատուկ յանձնաժողովներ (կոմիտէներ), որ զբաղւում են զուտ կամաւորական խնդրով ու հանդամանութեամբ։ Կոստանցայում այդ շարժումը տօնական ձև է ստանում. գործին մասնակցում են հայութեան խորթացած ու անհարազատ մի շարք մարդիկ ևս։

Եւ հարիւրաւոր երիտասարդներ, կանոնաւոր խմբեր կազմած, մեկնում են Կովկաս։ Նրանց դէմ ոչ մի արգելք չի յարուցւում ոչ ռումին, ոչ էլ ռուս սահմանական վարչութեան կողմից, որ և գործին տալիս է աւելի ոգևորիչ ու պաշտօնական հանգամանք։ Այնուհետև Բուքրէշում կազմակերպւում է մի կենտրոնական մարմին՝ «Համագործակցական» անուան տակ, որ իր վրայ է վերցնում հանգանակութեան ու կամաւորական խնդիրը։ Մեր նպատակից դուրս է այդ մասին մանրամասն խօսելը, ասենք միայն, որ կամաւորական տևողութեամբ և այդ անուամբ հեռացած հայ երիտասարդութեան թիւը՝ ամբողջ Ռումինիայից, սկսած պատերազմի առաջին օրերից, կարելի է հաշուել 5000 հոգի։ Սրանց մի մասը դիմում է Կովկաս, իբրև կամաւոր, միւս մասը մնում է Ռուսաստանում, գլխաւորապէս Օդեսայում ու Ռոստովում, ուր և պարապում են կօշկակարութեամբ ու երբեմն էլ մանր առևտուրով։

Դաղթականութեան այս վերյիշեալ թիւը երկնակի կերպով մեծացաւ և առհասարակ հայերի կացութեան յարաբերութիւնը փոխուեց Ռումինիայի պատերազմից յետոյ։ Այժմ խօսենք այդ մասին հերթով։

Ճերմակ

(Շարունակութիւնը հետևեալով)

## Գեղարուեստ

### ԶԱՐԴՈՒԱԾ ԲԱՄԲԻՌԸ

(Նուէր իմ Մուսային)

Տուր հին բամբիռը, սեղմեմ իմ կրծքին.
Վաղուց չեմ երգել, Սիրուն, քո չեմքին.
Լսիր ինձ, Սիրուն, միթէ կը հանգչի
Լուսի պէս սէրը, թրթիռը երգչի։

Հաւատա, Սիրուն, սէրս չի մարել.
Ինձ նման սիրող երգիչ չես ճարել.
Ես պիտի երգեր հիւսեմ քեզ համար,
Որ սէրդ ապրի դարերով անմար։

«Սխալւում ես դու», ասաց Նա երգչին.
Ու թեք արեց անցաւոր մէկին.
Տեսնում եմ ես էլ Սիրունը ծածուկ
Էն օտարի հետ անցաւ թևանցուկ։

Կանչում եմ Նրան—ետ արի, արի.
Ափսոս է, Սիրուն, սէրդ կը մարի.
Բայց Նա համբոյրով օտարին յարգեց,
Երկնի լուսի պէս սէրս անարգեց.—

«Չեմ սիրում ես քեզ, երգիչ պարզամիտ,
Քո երգն ու սէրն էլ շատ են միամիտ.
Քեզ համար չի, չէ, սրտիս թրթիռը,
Ի զուր է երգում սէր քո բամբիռը»։

* * *

Եւ ես զարնելով բամբիռս ժայռին,
Դատի կոչեցի արար աշխարհին,
Որ յետ տայ երգած սէրս վիրաւոր,
Որ խլեց, տարաւ մարդը յանցաւոր։

Աշխարհը լսեց. բայց չ՚եկաւ դատի,
Որ երգչի սիրոյ վիշտը փարատի.
Եւ վիշտս գրկած ծովի պէս անտակ՝
Փնտրում եմ սէրս վճիտ ու յստակ։

Զարդուած բամբիռն էլ սեղմած իմ կրծքին՝
Գալիս եմ երգում, Սիրուն, քո չեմքին.
Բայց շուրջս աւեր բուն է թափառում,
Չեմ գտնում երգած սէրս աշխարհում։

Եւ հեկեկում է գիշերը մթին,
Զարդուած բամբիռս ցաւերի միջին.
Դեռ յոյսերով լի մի նոր գարունի՝
Փնտրում է սէրը կորած Սիրունի։

Նրան վշտակից փայլում է շիւար
Աւեր հայրենի գիշերը խաւար,
Փայլում է լալով երգի թրթիռը
Բեկ-բեկ լարերի սէրն ու գրգիռը։

Զարդուած բամբիռն իմ դեռ ման է գալիս,
Դեռ գրանէ գուսը իր սէրն է լալիս.
Աշխարհէ աշխարհ կանչում է—արի.
Ափսոս է, Սիրուն, սէրդ կը մարի…

Վահան Միրաքեան

1917 թ. 1 յունուարի։
Շուլաւէր

## Գրականութիւն

### ՎԱՐԴՆ ՈՒ ԲԼԲՈՒԼԸ

«Մեծահրաշ այս խորհուրդ
«Անմղութեամբ առ մեզ հասեալ»։
(Շարական)

Նախնիքներից որդւոց որդի աւանդուելով եկել հասել է մին

չև մեզ հասնել գրոյցը Մշու աշխարհի գեղեցիկ վարդ ու բլբուլի մասին։

Գիշերը, պատմում էին մեր ծերերը, հիւսում է վարդի կոկոնը. պարարտ ցօղը արգասաւորում է և սուրբ արշալոյսը իր լուսեղէն ճառի ծայրի մէկ հպումովը բաց է անում նրա կուսական արգանդը և ծնունդ տալիս գեղեցկագոյն թերթիկներին։ Եւ մինչ մահկանացուներից ոչ ոք փորձած է այդ գաղտնիքին թափանցել, միայն բլբուլն է, որ արարչագործութեան սկզբից մինչև այսօր՝ մայիսեան գիշերները, վարդենու ոստերի վրայ թառած՝ կերգէ ու կուլայ, կուլայ ու կերգէ հազար ու մի գեղգեղանքներով ու անքուն հսկելով, որպէսզի մէկ անգամ և զոնէ մէկ անգամ տեսնէ թէ ինչպէս կը բացուի վարդի կոկոնը, ինչպէս կը ծնին թերթիկները։ Բայց ի զո՜ւր. ամսօրեայ երկարատև հսկելուց ու անքուն մնալուց յոգնում են աչքերի թերթերունքը. և մինչ ծննդեան խորհրդաւոր րոպէն մօտենում է, կարճատև, խիստ կարճատև մի ննջ խփում է արտասուալից աչքերը, հսում է մի կաթիլ արտօսր վարդի կոկոնի վրայ, ջղային մի ցնցում բաց է անում կոպերը և, աւա՜ղ, վարդը բացուած է արդէն...։

Հէք թռչունը սրտի կսկիծից դատապարտուում է տարեկան համբերութեան, թռչում գնում է հեռու աշխարհ. բայց իղձն ու փափագը մնում են անմեռ. գարնան հետ վերադառնում է իր վարդի քովիկը. կրկնւում են նոյն անքուն հսկողութիւնները, նոյն երգն ու լացը, նոյն տանջանքն ու աքնութիւնը, նոյն ննջըն ու ցնցումը... բայց արարչագործութեան վճիռն անողոք է և աքնութիւնն հէք բլբուլի՝ ապարդիւն ու անհետևանք։

Այսպէս էին պատմում մեզ մեր ծերերը Մշու աշխարհի վարդ ու բլբուլի մասին, և ի դէմս սոխակի՝ այսպէս են երգում մեր երգիչները.

«Բացուի՛ր, բացուի՛ր, իմ կարմիր վարդ պատուական,
«Գեղդ նման արեգական փառաւորման»։
(Ղափոնցի)

«Գարուն է, բացուեր վարդն ի բաղչային,
«Քաղցր եղանակին բլբուլն ու զումրին*).
«Սիրով են վառեալ ի կարմիր թփին,
«Կանաչ ու կարմիր տերև կու հագնեն.
«Գինով եմ, գինով, գիշերն երազով,
«Գինով եմ, գինով, ցերեկն արևով»։
(Գր. Աղթամարցի)

Դու իմ սուրբ Հայրենիք, արդեօք քո ծոցից ծլած վարդի բացումը խորհրդանշանը չէ՞ բախդիդ կոկոնի բացուելուն, որին տարաբախտ դաւակներդ ակնկալում են դարերից ի վեր։

*) Տատրակ

13 Յունուար 1917 Սահակ Մովսիսեան

# Մատենախօսութիւն

## ՇԱՆԹԻ «ԿԱՅՍՐԸ»

«Մարդիկը իրար կապողը յափշտակութիւնն է» մի անդուլ, անդադար, անզուսպ ու անյագ, խենթ ու խօլական ձգտման համար։ Մի ձգտումն, որ ինքնանպատակ է, որ ոչնչով չի յագենում ու վերջանում և միջոցների մէջ խտրութիւն դնում... Պէտք է վեր մագլցել, վե՛ր, խորտակելով ու ոտքի տակ տալով ամեն ինչ—և՛ կին, և՛ սէր, և՛ ժողովուրդ, և դահ և ամեն ինչ, միայն թէ յագենալ. ո՛չ, չյագենալ միշտ դէպի վեր սաւառնող ու ձգտող հոգին անհատի... Մինչև անհաս տենչանքները, մինչև մահուդ սահմանները... մնացածը բոլորովին ոչինչ է»։

Ահա այս դրամայի հիմնական գաղափարն ու բարոյականը։ Եւ նպատակին հակադիր համարեա թէ ոչինչ չկայ դրամայի մէջ։ Այդ տեսակէտից էլ նա մի ձոյլ միութիւն է։ Բոլոր գործող անձանց միացնողը միևնոյն ձգտումն է—փոխադարձ ատնահարումն ու յափշտակութիւնը, տիրապետելն ու զանձամոլութիւնը։ Ամեն ոք ձգտում է տիրելու, ամեն ոք տենչում է «գահ» ունենալու—մարդկանց թիկունքի կամ «հոգու վրայ»։ Բոլորը պայքարում են բոլորի դէմ. աշխատում են իրար ձգել և վեր մագլցել—եթէ դիմացինը թոյլ է՝ ոտնահարելով, եթէ ուժեղ է՝ խաբելով, չարաշահելով։ Յաղթանակողի մէջ խօսում է ուժեղի, տիրող «հաճոյքն ու քմահաճոյքը» և արհամարհանքը, իսկ թոյլի և պարտուածի մէջ թունոտ, նախանձի, անզօր ու ստոր վրէժխնդրութեան զսպուած ատելութիւնը, այն՝ ինչ Նիցշէն ressentiment-ի զգացում և հոգեբանութիւն է անուանում։

Ահա «Կայսր» «պատմական» դրամայի գլխաւոր հերոսների դաւանանքն ու հոգեբանութիւնը.

Կայսրը —Կ'յիշե՞ս խօսքերդ. ըսի՛ր, որ ես բարձրանամ պիտի վերերը, այնքա՜ն վերերը, ուր միայն Աստծու ընտրեալները կը դնեն իրենց ոտքը. ըսի՛ր, որ ես պիտի ըլլամ ամենէն վերը և ոչ ոք ինձի չի պիտի հասնի... Ես չեմ կրնար հանդուրժել, ուրիշ մը քովս կեցած իր հոգիին միջէն յանդգնի չափելու իր բազուկը իմինիս, իր արուեստը իմինիս ու հպարտանայ իր սըրտին խորքը։ Ո՛չ, չի՛ պիտի հպարտանայ ո՛չ իր խելքովը, ո՛չ շնորհքովը, ո՛չ իր զէնքովը։

Թիօֆանօ.—Ես կը ցանկամ նորէն ու նորէն գեղեցիկ, միշտ նո՛ր գեղեցիկ. ես կը ցանկամ նորէն ու նորէն թագուհի, միշտ նո՛ր թագուհի... այսպէս կուզէ հաճոյքս, քմահաճոյքս։

Վասիլ Լեկապէն... (միւս նե.քինին)—Տիրելը մե՛րն է, մե՛ր կոչումը, մե՛ր իրաւունքը, ներքինիներու իրաւունքը։ Մենք պիտի վարենք, պալատը մերը պիտի ըլլայ և բոլոր պաշտօնները մեր ձեռքը... Գահը իրենց, կարմիր կօշիկներն ալ իրենց, բայց գահակալը պէտք է ըլլայ բռունցքիս մէջ և կայսրութեան բոլոր թելերը...

Արխոնդ Թոռնիկ (միւս արխոնդ Դուկասին)... Հը՞մ... ճաղատ գլխուդ մէջ գուցէ դուն ալ երազ կը տեսնես, հէ՞... Բիւզանդական գահին վրայ, ամնկ, ոսկերդ փառաւոր երկնցուցած...

Եւ ո՞վ չէ այդ աշխարհում երազում գահի մասին, ո՞վ չէ ուզում մէն-մենակ իշխել, տիրել բոլորի վրայ և անպայման ու ամեն գնով դէպի վեր մագլցող պատատուկի նման լոկ իբրև վերելակ ծառայեցնում միւսներին։ Դեռ չենք յիշատակել Հաննայի և գլխաւոր հերոս Օհան Գուրգէնի իշխելու մոլութեան մասին... Տարօրինակ, չափազանց տարօրինակ միջավայր է այս միջավայրը, «Բիւզանդական» պատմութեան այս ժամանակաշրջանը։ Շատ տարօրինակ է, որ պատմութեան որոշ ժամանակաշրջանում մի արքունիքի հետ առնչութիւն ունեցող բոլոր մարդիկ միաժամանակ, միատեսակ ու անխտիր վարակուել ու տառապում են մի անզուսպ, մի խենթ մոլուցքով դէպի իշխանութիւնը։ Բոլորը, բոլորն էլ անխտիր ձգտում, տենչում են գահի. և այդ նպատակին հասնելու համար միջոցների մէջ ոչ մի խտրութիւն չեն դնում—սիրում են, դաւաճանում, սպանում, սատուածացնում և մոռանում րոպէապէս, յենւում իրար վրայ՝ հասնում գահի և ոտնատակ տալիս իրենց աջակիցներին, դէն հրում իբրև աւելորդ պատուանդանների... Այսպէս են այս աշխարհի, այս պալատի մարդիկ. (և որտեղի՞ց է հեղինակը գտել այդքան մեգալոմանիայով—մեծամոլութեամբ տառապողներ). պատմութեան՝ թէ երազանքի մէջ երևակայելի՞ ու հասկանալի՞ է հոգեկան այս միատեսակ հիւանդների «հիւանդանոցը»։ Որ «ամեն մարդ իր կուզն ունի» մտածելի ու հասկանալի է, բայց որ որոշ տեղի ու ժամանակի բոլոր մարդիկ միևնոյն կուզն ունեն՝ այդ բնական է և անհասկանալի, որքան էլ սիմբոլիկ «խորհրդապաշտ» լինի գրուածքն։

(Շարունակութիւնը հետևեալում)

Վ. Խորէնի

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Տպարան Ն. Աղանեանի Типографія Н. Аганьянцъ, Полицейская 7. Дозволено воен. ценз.